Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 19 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32. ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։


---

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԻՄՔՆ Է

*Մեր պարտիայի պատմության բոլոր էտապներում քաղաքական ագիտացիան խաղացել է և շարունակում է բացառիկ կարևոր դեր խաղալ։ Հանդիսանալով պարտիայի ամենահզոր ու սուր զենքը, քաղաքական ագիտացիան մշտապես մոբիլիզացնում է մասսաներին՝ պայքարելու քաղաքական ու տընտեսական բոլոր խնդիրների կատարման համար։ Որքան բարձր է քաղաքական-մասսայական աշխատանքը աշխատավորական մասսաների մեջ, այնքան ավելի մեծ են հաջողությունները տնտեսական բնագավառում։*

*Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ տընտեսական հաջողությունները, նրանց կայունությունն ու հարատևությունը ամբողջովին ու լիովին կախված են պարտիական-կազմա-*

կերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի հաջողություններից»։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ «Ստալինգրադի պարտիական կազմակերպությունում ագիտատորի հետ կատարվող աշխատանքի թերությունների և այդ աշխատանքը բարելավելու միջոցառումների մասին» որոշումից հետո, զգալիորեն լավացել է քաղաքական-մասսայական աշխատանքի վիճակը մեզ մոտ։ Ագիտացիոն աշխատանքը այժմ դարձել է ավելի կոնկրետ, որոշակի, նպատակասլաց։ Նա անմիջապես կապվում է տվյալ ձեռնարկության, կոլխոզի առջև կանգնած հիմնական խնդիրների հետ և նպաստում այդ օբեկտի պլանների կատարմանն ու գերակատարմանը։ Ագիտատորները խորանում են գործարանի, ցեխի, հերթափոխության աշխատանքի մանրամասնությունների մեջ, հետաքրքրվում նրան վերաբերող բոլոր հարցերով, բացահայտում աշխատանքում եղած թերությունները, կոլեկտիվի անդամներին մոբիլիզացնում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի խնայողության խիստ ռեժիմ կիրառելու, աշխատանքի կարգապա-



հությունն ամրապնդելու, արտապլանային կուտակումներ ստանալու համար։

Ագիտացիոն աշխատանքի ճիշտ կազմակերպումը բարձրացնում է աշխատավորների խանդավառությունը և աշխատանքային նոր սխրագործությունների մղում նրանց։

Երևանի № 3 Կոշիկի ֆաբրիկայի ձևող ցեխը, որտեղ ագիտատոր է ընկ. Օ. Գևորգյանը, ագիտացիոն աշխատանքը ճիշտ կազմակերպելու հետևանքով, միշտ գերակատարում է իր պլանները։ Ցեխում չկա ոչ մի բանվոր, որ չգերակատարի իր առաջադրանքը։ Այս ցեխում են աշխատում անվանի ստախանովականներ Մարիա Թումանյանը և Ելենա Վոլգովան, որոնք մրցման մեջ են մտել Մոսկվայի «Պարիժսկայա կոմունա» ֆաբրիկայի անվանի ձևող, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վ. Մատրոսովի հետ։

Ագիտատոր ընկ. Գևորգյանը անվանի ստախանովականների փորձը մասսայականացնում, հասցնում է յուրաքանչյուր բանվորին։ Ինքը, ընկ. Գևորգյանը նույնպես առաջավոր է արտադրության մեջ։ Իր անձնական օրինակով նա ոգևորում է ցեխի բանվորներին, օգնում նրանց պլանների գերակատարման գործում։ Նա մեծ ուշադրություն է դարձ-

նում ցուցադրական ագիտացիային. ցեխում փակցված են սոցիալիստական մրցության արդյունքները, ցեխի, յուրաքանչյուր բանվորի պլանների կատարողականը։ Նա ամեն օր ամփոփում է ցեխի աշխատանքի արդյունքները և այն մասսայականացնում բանվորների մեջ։ Ցեխի ամեն մի բանվոր գիտե, թե նա այդ օրը ինչքան արտադրանք է տվել և որքան է վաստակել։ Այստեղ առանձնահատուկ ուշադրություն է դարձվում նյութերի խնայողության հարցին։ Ցեխի բանվորները անընդհատ նորանոր միջոցներ են որոնում նյութերի խնայողությունը բարձրացնելու համար։ Նրանց համառ աշխատանքը իզուր չանցավ։ Այս տարվա 8 ամսվա ընթացքում ձևող ցեխը տվել է 12,532 դեցիմետր փափուկ, 5804 դեցիմետր ստատի կաշվի և 120 մետր կտավի խնայողություն։

Ընկ. Գևորգյանի ագիտացիան չի սահմանափակվում միայն ցեխի արտադրական խնդիրներով։ Այդ խնդիրները նա սերտորեն կապում է մեր պարտիայի և կառավարության քաղաքականության հիմնական հարցերի հետ, գործարանի առջև կանգնած առաջադրանքները բխեցնում այդ հիմնական հարցերից։



Հաճախակի մեր ագիտատորները քաղաքական-ագիտացիոն աշխատանքը չեն կապում տնտեսական հարցերի հետ, այն կրում է ձևական բնույթ և չի օգնում գործին։ Քիչ չեն դեպքերը, երբ ագիտատորները ձեռնարկություններում կամ կոլխոզներում սիստեմատիկաբար անց են կացնում զրույցներ, թերթերի ընթերցանություններ, բայց տնտեսական գործերը վատ են ընթանում, պլանները չեն կատարվում։ Այդ երևույթի պատճառն այն է, որ ագիտատորներն իրենց զրույցները կազմում են ընդհանուր դատողությունների հիման վրա, չեն կապում ձեռնարկության կամ կոլխոզի հերթական խնդիրների հետ, իրենց կոլեկտիվի կյանքի հետ, չնայած որ ագիտատորի տրամադրության տակ կան իրենց ձեռնարկության, կոլխոզին վերաբերվող բազմաթիվ փաստեր, որոնց ճիշտ օգտագործումը կհասցներ մեծ հաջողությունների։ Որոշ ագիտատորներ ընկնում են այլ ծայրահեղությունների մեջ, նսեմացնելով քաղաքական ագիտացիայի դերը, այն վեր են ածում սոսկ արտադրական-տեխնիկական զրույցի, կամ թե չէ ինֆորմացիայի՝ իրենց կոլեկտիվի արտադրական հարցերի մասին, իսկ պարտիայի և կառավարության

քաղաքականության կարևոր հարցերը նրանք բացատրում են մակերեսորեն և ոչ սիստեմատիկաբար։

Մեր երկրի արդյունաբերության ու գյուղատնտեսության առջև կանգնած հսկայական խնդիրները պահանջում են մասսայական-քաղաքական աշխատանքի անընդհատ բարելավում։ Ագիտատորները պետք է ամեն օր բանվորներին, կոլխոզնիկներին և ինտելիգենցիային բացատրեն պարտիայի ու կառավարության որոշումները, ժամանակակից միջազգային իրադրությունը, Սովետական պետության արտաքին քաղաքականությունը, նրա հետևողական պայքարը ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար, դեմոկրատական ուժերի համախմբումը ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։

Այժմ, երբ մեր երկիրը ավարտում է հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարին, մասսայական-քաղաքական աշխատանքի բովանդակությունը պետք է լինի սովետական բոլոր մարդկանց՝ բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային մոբիլիզացնել արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու՝ յուրաքանչյուր գործարանի և շրջանի, յուրաքանչյուր բանվորի ու կոլխոզնիկի կողմից։



Մեր Ռեսպուբլիկայի ֆաբրիկաներն ու գործարանները լենինգրադցիների օրինակով լայն սոցիալիստական մրցություն են ծավալել՝ 1948 թվականի արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Շատ ձեռնարկություններ պարտավորություն են վերցրել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանները Հոկտեմբերյան Մեծ ռեվոլյուցիայի 31-րդ տարեդարձի օրը կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու, արտապլանային լրացուցիչ կուտակումներ ստանալու համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների ագիտատորների հիմնական խնդիրն է աշխատավորների մեջ մասսայական-քաղաքական աշխատանքի լայն կազմակերպման միջոցով ապահովել վերցրած պարտավորությունների կատարումը։

Քաղաքական աշխատանքի ճիշտ զուգակցումը տնտեսական խնդիրների հետ, քաղաքական ագիտացիայի մշտական կապակցումը արտադրական կոնկրետ հարցերի հետ, ագիտացիոն աշխատանքի այն հիմնական մեթոդն է, որին պետք է տիրապետեն մեր ագիտատորները։

# ԳՐԱՖԻԿԱՅԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՊԼԱՆՆԵՐԻ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

*Լենինգրադցիների նախաձեռնությամբ ամբողջ երկրով մեկ ծավալվել է սոցիալիստական մրցություն՝ տարեկան արտադրական պլանները Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձին կատարելու համար։*

*Մեր երկրի միլիոնավոր աշխատավորները փնտռում և գտնում են ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման տեմպը բարձրացնելու նորանոր ռեզերվներ։ Նրանք ձգտում են աշխատանքը դարձնել շահութաբեր, ամենուրեք և ամեն բանում անցկացնել ամենախիստ խնայողության ռեժիմ՝ հումքի, նյութերի, վառելիքի,*



*էլեկտրաէներգիայի և այլնի ծախսման մեջ, նոր տեխնիկան արմատավորելու, այն լիովին յուրացնելու հիման վրա բարձրացնել արտադրության տեմպերը և հասնել պլանների կատարմանը ժամկետից շուտ։*

*Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները հետևելով լենինգրադցիների օրինակին, մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, պայքարում են տարեկան պլանների գերակատարման համար։ 1948 թվականի ինն ամսվա արտադրական պլանը կատարված է 108 տոկոսով։ Ինն ամսվա ընթացքում նրանք պլանից դուրս տվել են 20 միլիոն ռուբլու ավելի արտադրանք։ Արտադրանքի աճման տոկոսը 1947 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ կազմում է ավելի քան 37 տոկոս։ Ինն ամսվա արտադրական պլանների կատարման արդյունքները ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ լայն կերպով է ծավալված սոցիալիստական մրցությունը, այնտեղ հաջողությունները մեծ են։*

*Պլանների կատարման համար հսկայական նշանակություն ունի աշխատանքի գրաֆիկան, աշխատանքի խիստ ռիթմիկ տեմպը։ Դեռ ՀամԿ(բ)Պ Համամիութենական*

18-րդ կոնֆերանսում ընկ. Գ. Մալենկովը իր զեկուցման մեջ նշել է, որ «Անհրաժեշտ է, այնուհետև, վերջ դնել անպլանայնությանը, արտադրանքի անհամաչափ թողարկմանը, գրոհայնությանը ձեռնարկությունների աշխատանքի մեջ և հասնել այն բանին, որ յուրաքանչյուր գործարան, ֆաբրիկա, հանքահոր, երկաթուղի ամեն օր կատարի արտադրական ծրագիրը՝ նախօրոք մշակված գրաֆիկայով»։

ՀամԿ(բ)Պ Համամիութենական 18-րդ պարտկոնֆերանսի ցուցումները լավ են յուրացրել Երևանի շատ ձեռնարկություններ՝ Կիրովի անվան, Ավտոդողերի, Կաբելի, Դազգահաշինական, Կոնսերվի, Մուլիտի և այլ գործարաններ։ Այդ գործարանների կոլեկտիվները ձեռք են բերել զգալի հաջողություններ արտադրական պլանների կատարման գործում։ Նրանք ամեն օր, ամեն ամիս կատարում են արտադրության գրաֆիկան և ավելացնում արտադրանքի քանակը։ Երևանի Մուլիտի գործարանը ժամկետից շուտ կատարեց տարեկան պլանը և այժմ աշխատում է 1949 թվականի հաշվին։ Կարբիդի գործարանի կոլեկտիվը համառորեն պայքարում է տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Գործարանի դիրեկցիան մշա-



կել է կոնկրետ միջոցառումներ աշխատանքային գրաֆիկան կատարելու ուղղությամբ։ Շնորհիվ ձեռնարկված միջոցառումների, գործարանը ինն ամսվա պլանները կատարել է 111 տոկոսով, իսկ արտադրանքի աճը 1947 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, բարձրացրել է 114,6 տոկոսով։

Զգալի չափով աճել է նաև աշխատանքի արտադրողականությունը։ Այս տարի այդ աճը կազմում է մոտ 117 տոկոս։ Կարբիդագործները ուժեղ պայքար են ծավալել խնայողության խիստ ռեժիմի համար և զգալի հաջողությունների են հասել նաև այդ ասպարեզում։ Նրանք 7,5 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի և ավելի քան 2 հազար տոննա վառելանյութի խնայողություն են տվել անցած ամիսների ընթացքում։ Գործարանում 68 բանվորներ արդեն կատարել են իրենց տարեկան նորմաները։ Գործարքով աշխատող բոլոր բանվորները երկհարյուրականներ ու ստախանովականներ են։

Աշխատանքի գրաֆիկայի հետ կապված հարցերը լուծելու համար ստախանովականներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին մոբիլիզացնելու նպատակով,

գործարանի դիրեկցիան ամեն ամիս հրավիրում է արտադրական ակտիվի ժողով, որտեղ լսվում են զեկուցումներ արտադրական-տնտեսական հարցերի վերաբերյալ։ Գործարանում լավ է կազմակերպված ցուցադրական ագիտացիան։ Բոլոր ցեխերում փակցըված են պլակատներ, որոնք ցույց են տալիս, թե ինչ խոշոր նշանակություն ունի աշխատանքի գրաֆիկայի ճիշտ կատարումը, արտադրական առանձին պրոցեսների կըրճատման անհրաժեշտությունը, բացատրելով, թե այդ կրճատումներից տնտեսական ինչպիսի օգուտներ կարող է ստանալ գործարանը։ Կարբիդի գործարանի յուրաքանչյուր բանվոր գիտե, որ էլեկտրաէներգիայի մեկ տոկոսի խնայողությունը տալիս է ավելի քան 5000 ռուբլու օգուտ։

Մեծ պայքար է ծավալվում գործարանի ռիթմիկ աշխատանքի համար։ Այդ պայքարի մեջ զգալի հաջողություններ են ձեռք բերել ոչ միայն առանձին բանվորներ, այլև բրիգադաներ, ցեխեր, առանձին տեղամասեր։ Զորացրված բանակային, եռակի շքանշանակիր ընկ. Ղազարյանը կարբիդի վառարանների բարձր արտադրողականության համար ծավալված մրցության նախաձեռնողն է հանդիսանում։ Նրա բրիգադան պարտավորվել էր



աշխատանքի գրաֆիկայի կատարման, արտադրանքի տեմպերի արագացման միջոցով սիստեմատիկորեն, ամեն հերթափոխության ժամանակ պլանից դուրս տալ 25 տոկոս արտադրանք, և նրանք կատարեցին իրենց խոստումը։

Ղազարյանի բրիգադայի օրինակը ջերմ արձագանք գտավ բոլոր կարբիդագործների մեջ։ Գ. Բաբաջանյանի և Ա. Մարգարյանի բրիգադները մտնելով սոցիալիստական մրցության մեջ, շուտով գերազանցեցին Ղազարյանի բրիգադայի ձեռք բերած նվաճումները և գերակատարելով ամենօրյա գրաֆիկան, տալիս են 26—27 տոկոս ավելի արտադրանք։

Ռիթմիկ աշխատանքի լավագույն օրինակ է հանդիսանում Երևանի Ավտոդողերի գործարանը, որը ամսե-ամիս, տարեց-տարի ավելացնում է արտադրանքի քանակը և դա շնորհիվ աշխատանքի գրաֆիկայի ճիշտ կիրառման։ Գործարանն իր առաջին արտադրանքը տվել է Հայրենական Մեծ պատերազմի դաժան օրերին։ 1943 թվականին գործարանը տվեց առաջին 55 ավտոդողը, իսկ 1945 թվին ավտոդողերի արտադրությունը հասավ մինչև 8 հազարի։ Հաջորդ տարիների ընթացքում գործարանը բազմապատ-

կեց իր արտադրանքը։ 1948 թվականի ինն ամսվա ընթացքում նա տվել է այնքան արտադրանք, որքան տվել էր 1947 թվականի ամբողջ տարվա ընթացքում։ Աշխատանքի գրաֆիկայի կատարմանը ուշի-ուշով հետևվում է գործարանի պարտկազմակերպությունը, դիրեկցիան։ Պարտկազմակերպությունն իր ժողովներում հաճախակի քննում է արտադրական գրաֆիկայի կատարման ընթացքը։ Գրաֆիկայի կատարման գործում մեծ դեր են խաղում գործարանի ագիտատորները։ Օրվա գրաֆիկայի կատարման ընթացքը քննարկելու նպատակով, նրանք լայն կերպով մասսայականացնում են ստախանովականների, առաջավորների լավագույն աշխատանքը և նրանց հարուստ փորձը հասցնում բոլորին։

Գրաֆիկայի բարձրացման համար լարված պայքար է մղում նաև Կաբելի գործարանի կոլեկտիվը։ Կաբելի գործարանը հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ծնունդ է։ 1946 թվականին գործարանը տվեց իր առաջին արտադրանքը։ Նույն տարվա ընթացքում գործարանի ամբողջ կոլեկտիվը համառ պայքար էր մղում տեխնոլոգիական պրոցեսները բարելավելու, նոր տեխնիկան



արմատավորելու, այն լիովին յուրացնելու համար։ Կոլեկտիվի ջանքերը զուր չանցան։ 1947 թվականին արդեն, գործարանը սկսեց աշխատել գրաֆիկայով։ Բարձր գրաֆիկայի համար մղվող պայքարը մտավ գործարանի կենցաղի մեջ։ 1947 թվականին արդեն, կաբելագործները համախառն արտադրանքի պլանը գերակատարեցին 34 տոկոսով, 1946 թվականի համեմատությամբ ինքնարժեքը իջավ երկու անգամ։ Այս տարի գործարանի կոլեկտիվը ավելի մեծ նվաճումների է հասել։ Չնայած գործարանի արտադրանքը անցյալ տարվա համեմատությամբ բարձրացել է մոտ երեք անգամ, բայց գործարանի կոլեկտիվը չի բավարարվում դրանով, նա համառորեն պայքարում է գրաֆիկայի բարձրացման համար և ապահովում ամսական պլանների կատարումը։ Յուրացնելով նոր տեխնիկան և պատրաստելով կաբելագործ բանվորների նոր կադրեր, գործարանի կոլեկտիվը հասավ նրան, որ կրճատեց ստացվող դոտացիայի քանակը 479 հազար ռուբլով և պարտավորվեց մինչև տարվա վերջը տալ 350 հազար ռուբլու կուտակում։ Գործարանի դիրեկցիան և ինժեներա-տեխնիկական աշխատողները ձգտում են կիրառել

այնպիսի ձեռնարկումներ, որոնք պահանջում են քիչ կապիտալ ներդրումներ, բայց տալիս են մեծ էֆեկտներ։ Արտադրության մեջ կենսագործված 84 ռացիոնալիզատորական առաջարկները գործարանին տվել են ավելի քան 126 հազար ռուբլու օգուտ։

Երևան քաղաքի գործարանների, ֆաբրիկաների կոլեկտիվները մտնելով սոցիալիստական մրցության մեջ, ամեն կերպ աշխատում են բարձրացնել արտադրության գրաֆիկան։ Բարձրացրած գրաֆիկան — դա առաջադրանքների գերակատարման գրավականն է։ Նա ստիպում է բանվորներին, վարպետներին, ինժեներներին, ձեռնարկության ղեկավարներին լավ օգտագործել սարքավորումները, ավելի լավ կազմակերպել աշխատանքային ժամը։ Բարձրացրած գրաֆիկան պայմաններ է ստեղծում սոցիալիստական մրցության է՛լ ավելի ծավալման համար, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։

Մ. ԼԱԼԱՅԱՆ
ՀԿ(բ)Պ Երևանի Կազմակերպչական բաժնի վարիչ

---

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԿԱՏԱՐԵԼ ԱՇՆԱՆԱՑԱՆ ՀԱՑԱՀԱՏԻԿՆԵՐԻ ՑԱՆՔԸ

Հայկական ՍՍՌ-ում աշնանացան հացահատիկները մեծ տարածություն են գրավում և հատիկի ընդհանուր արտադրանքի մեծացման տեսակետից վճռական դեր են կատարում։ Դեռ մոտիկ անցյալում աշնանացան ցորեն մշակվում էր Հայկական ՍՍՌ-ի միայն ցածրադիր շրջաններում և լեռնային ու նախալեռնային շրջանների այն մասերում, որտեղ բույսերի ձմեռելու համար գոյություն ունեն առավել բարենպաստ պայմաններ։

Այժմ, շնորհիվ ավելի բարձր և առաջավոր ագրոտեխնիկական միջոցառումների կիրառման և անբարենպաստ պայմաններին ավելի դիմացկուն սորտերի ներդրման, աշնանացան ցորենը մշակվում է բոլոր շըր-

ջաններում, և հացահատիկային կուլտուրա-
ների շարքում համարյա ամենուրեք առա-
ջատար դեր է կատարում։

Մշակման նորմալ պայմաններում Հայաս-
տանի համարյա բոլոր շրջաններում առայժմ
աշնանացան ցորենն ավելի բարձր բերք է
տալիս, քան գարնանացան ցորենը, գարնա-
նացան գարին և այլ հասկավոր գարնանա-
ցան հացահատիկները։ Աշնանացան ցորենի
ցանքատարածությունների բարձրացման հե-
տևանքով ոչ միայն մեծացել է բերքատվու-
թյունը, այլ և այդ բերքատվությունն անհա-
մեմատ ավելի կայուն է դարձել։ Այժմ ար-
դեն ինչպես ցածրադիր, այնպես էլ լեռնային
շրջանների մեծ թվով կոլխոզներ սիստեմա-
տիկորեն, օր օրի վրա աճող բարձր ու կա-
յուն բերք են ստանում։ Թալինի, Էջմիածնի,
Արտաշատի, Նոր Բայազետի, Սիսիանի և մի
շարք այլ շրջանների կոլխոզներում ոչ միայն
առանձին օղակներ, այլև ամբողջ բրիգադա-
ներ հեկտարից ստանում են աշնանացան
ցորենի 15—25 ցենտներ հացահատիկի բերք։

Աշնանացան ցորենի ցանքի ժամանակի
ճիշտ ընտրությունը չափազանց մեծ նշա-
նակություն ունի։ Այդ ապացուցված է թե
արտադրական փորձով և թե գիտահետազո-
տական տվյալներով։ Ցանքի ճիշտ ժամկետի



հարցը առանձնապես սուր բնույթ է ստա-
նում այժմ, երբ մեր առաջ պարտիայի ու
կառավարության կողմից դրված է պատաս-
խանատու և պատվավոր խնդիր՝ մաքսիմալ
չափով բարձրացնել մշակվող կուլտուրաների
բերքատվությունը և հատիկի համախառն
արտադրանքը։ Աշնանացանի ցանքը ժամա-
նակին կատարելը, այլ ագրոտեխնիկական
միջոցառումների ճիշտ կիրառման հետ միա-
սին, նպաստում է ոչ միայն բերքատվու-
թյան մեծացմանը, այլ և աշխատանքի ար-
տադրողականության բարձրացմանը և ըս-
տացված պրոդուկցիայի ինքնարժեքի իջեց-
մանը։

Ցանքի ժամկետ սահմանելիս յուրաքան-
չյուր շրջանում պետք է հաշվի առնել տվյալ
վայրի կլիմայական պայմանների առանձ-
նահատկությունները, աշնանային եղանակ-
ների բնույթը, սորտի, հողի, ռելյեֆի,
էքսպոզիցիայի յուրահատկությունը և այլն։

Սևանի ավազանի շրջաններում մեր կա-
տարած փորձերը ցույց են տալիս, որ օպ-
տիմալ ժամկետներում ցանված Ուկրաինկա
ցորենը մինչև ուշ աշնանային սառնամա-
նիքները կարողանում է ուժեղ թփակալել,
տալ խոր թափանցած արմատային սիստեմ
և կուտակել իր օրգաններում անհրաժեշտ

քանակությամբ սննդանյութերի պաշար։ Դրա հետևանքով հաջորդ գարնանը ցորենի բույսերն սկսում են իրենց աճն ավելի շուտ և ավելի ռացիոնալ կերպով են օգտագործում հողում եղած ջրի ու սննդանյութերի պաշարը։ Բույսերի խողովակակալելը, հասկակալումը, հասունացումը և բերքահավաքը նույնպես ավելի վաղ ժամկետներում են տեղի ունենում, մի հանգամանք, որը Հայաստանի շատ շրջանների համար բարձրկայուն բերք ստանալու կարևոր գրավականներից մեկն է։ Դրանում դժվար չէ համոզվել, դիտելով անջրդի աշնանացան ցորենի ցանքերը Կոտայքի, Աշտարակի, Ալագյազի, Ապարանի և այլ չորային շրջաններում, ուր վաղ ցանքի առավելությունները միայն հողում եղած ջրի պաշարի լրիվ օգտագործմամբ և բույսերի կյանքի այլ պայմանների լավացմամբ չի սահմանափակվում։ Այդպիսի շրջաններում երաշտ տարիներին վաղ ցանած աշնանացան ցորենը մոտ 12—15 օր ավելի շուտ է հասունանում, քան ուշ ցանած աշնանացանը և այդպիսով փրկվում է չոր քամիների և քամքաշի կործանարար ազդեցությունից։ Հակառակ պատկեր է նրկատվում ուշ կատարած աշնանացանի ցանքերում, որտեղ բույսերն ավելի ուշ են հասունանում, կաթնային հասունության շրջանում ենթարկվում են երաշտի ազդեցության և տալիս են չմշակված ու ցածրորակ հատիկ։



Փորձերը ցույց են տվել, որ աշնանացան ցորենը խիստ տուժում է ինչպես ուշ, այնպես էլ ժամկետից շուտ ցանելու դեպքում։ Օպտիմալ ժամկետից շուտ ցանած աշնանացան ցորենը, համապատասխան բնական պայմանների առկայության դեպքում, գերաճում է, անցնում է յարովիզացիայի ըստադիան և ձմեռը ոչնչանում է անպայմանորեն։

Շատ դեպքերում գերվաղ ժամկետում ցանած աշնանացան ցորենը տալիս է փարթամ բույսեր, որոնք համարյա անխուսափելիորեն ոչնչանում են տիպելու կամ լըխկելու հետևանքով։ Գերվաղ ժամկետում ցանած աշնանացան ցորենը մեծ չափով տուժում է նաև ժանգից և մի քանի վնասատուներից։ Ուշ ցանքի դեպքում էլ աշնանացան ցորենի բույսերը մինչև սառնամանիքները լավ աճած և ամրացած չեն լինում, որի հետևանքով թույլ են դիմադրում ձմռան ցրտերին և այլ անբարենպաստ պայմաններին, ձյան շերտի բացակայության կամ փոքրության դեպքում նոսրանում են և հե-

տագայում մեծ չափով տուժում են նաև փարթամորեն աճող մոլախոտերից։

Աշնանացան ցորենի ցանքի օպտիմալ ժամկետ պետք է սահմանել յուրաքանչյուր շրջանի և յուրաքանչյուր սորտի համար առանձին-առանձին, փորձնական տվյալների և ճշգրիտ կատարված դիտողությունների հաշվառման հիման վրա։ Եթե բարձր լեռնային շրջանների պայմաններում աշնանացան ցորենի ցանքի ամենալավ ժամանակը օգոստոսի 2-րդ կիսամսյակից սկսած մինչև սեպտեմբերի 2-րդ կիսամսյակն է, ապա միջին լեռնային, նախալեռնային և ցածրադիր շրջաններում աշնանացան ցորենի ցանքը կարելի է շարունակել մինչև հոկտեմբերի առաջին տասնօրյակը և նույնիսկ մինչև նույն ամսի 15—20-ը։

Ինչ վերաբերում է աշնանացան ցորենի ցանքի երկարությանը, ապա Հայաստանի շատ շրջաններում լիարժեք ցանք ստանալու համար այդ տևողությունը 20—30 օրից ավելի չպետք է լինի։

Ինչպես արդեն ասվել է, աշնանացան ցորենի առանձին սորտերը տարբեր վերաբերմունք ունեն ցանքի ժամկետների նկատմամբ։ Տարբերվելով միմյանցից ցրտադիմացկունությամբ, չորադիմացկունությամբ,



պառկելու հատկությամբ, տարբեր սորտեր միջավայրի այս կամ այն պայմանների կոմպլեկսի առկայության դեպքում պահանջում են նաև ցանքի տարբեր ժամկետ։ Բոլոր դեպքերում վաղ ցանքը լավ արդյունք է տալիս այն սորտերի նկատմամբ, որոնք պահանջում են յարովիզացիայի ավելի երկար տևողություն (43—50 օրից ոչ պակաս)։ Այդպիսի սորտերի թվին են պատկանում Ուկրաինկան, Կարմիր Ալֆահատը, Ալթի-Աղաջը, Ստեպնյաչկան։ Ցանքի մի փոքր ուշացում հանդուրժում են Սպիտակահատը, Ղարաղըլչըղը և Զարդան, ուշ ցանք թույլ են տալիս Գալգալոսը և Կամչատկան, որոնք մի շարք շրջաններում ցանվում են, որպես «Դուդուրմա» (ձմեռնամուտին)։

Ցանքի ժամկետի և նորմայի միջև գոյություն ունի սերտ կապ։ Ապացուցված է, որ յուրաքանչյուր անգամ ցանքի ուշացումը պահանջում է նորմայի բարձրացում։ Ցանքի ուշացման դեպքում աշնանացան ցորենի ցանքի նորման ագրոկանոններով սահմանված նորմայից, նայած ուշացման տևողությանը և սորտի առանձնահատկություններին, ավելացնել 5—15 տոկոսի սահմաններում։

Սակայն աշնանացան ցորենի մինչև

այժմ նկարագրած դրական հատկանիշները, ինչպես արդեն նշվել է, լրիվ չափով արտահայտվում են այն դեպքում միայն, երբ կիրառվում է հողի մշակման և ցանքերի խնամքի ողջ կոմպլեքսը ու մշակվում են տեղական բնական պայմանների առանձնահատկություններին հարմարված սորտեր։

Մեզ մոտ աշնանացան հացահատիկների մեծ մասը ցանվում է ցելահողամասերում, սակայն նրա որոշ մասը մշակվում է նաև մի որևէ կուլտուրայից անմիջապես հետո— այդ կուլտուրայից ազատված հողամասում։

Այժմ աշնանացանի մեծ մասն արդեն կատարված է, ցելահողամասերը համարյա ամբողջապես ցանված են, մնում է ցանելու գլխավորապես այն հողամասերը, որոնք ազատվում են կարտոֆիլից, ճակնդեղից, կաղամբից և այլ շարքահերկ կուլտուրաներից։ Միանգամայն պարզ է, որ այդ պայմաններում ամեն մի կոլխոզ, որը դեռ շարունակում է աշնան ցորենի, տարեկանի կամ գարու ցանքը, պետք է աշխատի ոչ մի օր անգամ չկորցնել և ամենասեղմ ժամկետում վերջացնել այդ կարևոր աշխատանքը։ Դրա համար բերքահավաքի հետ միասին պետք է հողամասը իսկույն վարել, փոցխել ու ցանել շարքացանով, իսկ շաղացանի դեպքում,



վարից հետո պետք է ցանել և ապա նոր փոցխել։ Այս նույն եղանակով պետք է վարվել նաև «դոլդուրմա»-յի ցանք կատարելիս։

Անցյալ տարիներին որոշ շրջաններում ցանքի ուշացումը ցանկանում էին բացատրել սերմանյութի բացակայությամբ կամ պակասով։ Անհրաժեշտ ենք համարում նշել, որ նույնիսկ թարմ և դեռ լրիվ չչորացած հատիկը, որը հատկացված է ցանքին, բավական է չորացնել արևակի տակ 5—6 օր, որպեսզի նա միանգամայն պիտանի լինի իբրև սերմանյութ և ցանվելիս տա միահամուռ ու առողջ ծիլեր։ Պետք է անխնա պայքարել ցանքն ուշացնելու ամեն մի փորձի դեմ, որովհետև բարձր բերք ապահովում են միայն այն ցանքերը, որոնք կատարվել են տվյալ վայրի համար օպտիմալ ժամկետներում։

Երբեք չպետք է մոռանալ, որ ագրոտեխնիկորեն ճիշտ ժամկետում կատարված ցանքը ոչ միայն աշնանացան հացահատիկների, այլ և բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության կարևորագույն գրավականներից մեկն է։

Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ,
(Գյուղատնտեսական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր)

# Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆԸ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

*ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի որոշմամբ հրատարակվող «Ագիտատորի գրադարան» գրքերի սերիայից հայերեն լեզվով լույս տեսավ Մ. Ի. Կալինինի «Քաղաքական ագիտացիայի մասին» բրոշյուրը։*

*Այս բրոշյուրում զետեղված են Մ. Ի. Կալինինի հետևյալ ելույթները. «Պարտիական-մասսայական աշխատանքի մի քանի հարցեր», «Ռազմաճակատում տարվող ագիտացիայի մի քանի հարցերի մասին», «Ագիտատորի խոսքը ռազմաճակատում», «Միասնական մարտական ընտանիքը», «Մի քանի խոսք պրոպագանդայի ու ագիտացիայի մասին»։*

*Լենինի ու Ստալինի հավատարիմ աշակերտ և զինակից Մ. Ի. Կալինինն իր այդ ելույթներում ամենայն խորությամբ բացահայտել է բոլշևիկյան ագիտացիայի հիմնա-*



*կան գծերը և ցույց է տվել, թե ինչպես պետք է օգտագործել մեր պարտիայի հարստագույն փորձը մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի դրվածքի ու նրա կատարման գործում։*

*Լինելով ամենաժողովրդական պրոպագանդիստն ու ագիտատորը մեր երկրում, ելնելով իր բազմամյա փորձից, Միխայիլ Իվանովիչ Կալինինն ագիտատորներին սովորեցնում էր տիրապետել քաղաքական ագիտացիայի արվեստին, ձեռք բերել բոլշևիկյան ճշմարտացի խոսքը յուրաքանչյուր մարդու հասցնելու կարողություն, որպեսզի այդ բեղմնավոր աշխատանքը ոգևորի ու մոբիլիզացնի աշխատավորների լայն մասսաներին՝ հաջողությամբ լուծելու կոմունիզմի կառուցման խնդիրները մեր երկրում։*

*Ներկա ժողովածուի մեջ զետեղված Մ. Ի. Կալինինի բոլշևիկյան ագիտացիայի հարցերի մասին ելույթներից ագիտատորները սովորում են մասսաների հետ շփվելու, նրանց դիմելու ընդունակություն։ Մ. Ի. Կալինինը սովորեցնում էր, որ ագիտատորը պետք է համեստ լինի և խրատական ոգով համակված չլինի մասսաների հետ շփվելիս։ Զրույցի ժամանակ պետք է աշխատել մարդկանց շարժել տեղից, որպեսզի նրանք ակտիվորեն*

մանակյեն հարցերի քննարկմանը։ Նա խորհուրդ էր տալիս երբեք չխուսափել սուր հարցեր դնելուց և նրանց պատասխանելուց, ինչպես հաճախ անում են որոշ ագիտատորներ։ «Ոչ մի դեպքում դրան մի դիմեք, խույս մի տվեք պատասխանելուց, մի կոծկեք դրված հարցերը,— ասում էր Միխայիլ Իվանովիչը։ Եթե այս կամ այն հարցին չեք կարողանում անմիջապես պատասխանել, հենց ուղղակի ասեք. «Հարցը հետաքրքրական է ու կարևոր, ես հաճույքով կպատասխանեի դրան, բայց այժմ պատրաստ չեմ այդ անելու, ես այդ մասին լավ չեմ մտածել, դժվարանում եմ պատասխանել։ Ես կպարզեմ, կխորհրդակցեմ ընկերների հետ և այն ժամանակ կպատասխանեմ ձեզ։ Բայց գուցե ձեր մեջ կա որևէ մեկը, որը կկարողանա պարզաբանել այդ հարցը»։ Դա արդեն միանգամայն այլ բան կլինի։ Իսկ մեզանում սիրում են երբեմն խուսափել հրատապ հարցերից, կամ այնպես կբացատրեն դրանք, որ մարդիկ ոչինչ չեն հասկանա և ուղղակի ճիշտ պատասխան չեն ստանա» (էջ 9)։

Նա բացատրում էր, որ այդպիսի մոտեցման դեպքում մարդիկ կզգան ագիտատորի անկեղծությունն ու ազնվությունը։

Միաժամանակ Մ. Ի. Կալինինը կոնկրետ



օրինակներով ցույց էր տալիս այն մեթոդները, որոնց միջոցով հնարավոր է մարդկանց մեջ մտքերի փոխանակություն հարուցել, նրանց վիճաբանության դրդել և այդպիսով հետաքրքիր ու արդյունավետ դարձնել զրույցը։ Օրինակ, նա պարզաբանում է, թե ինչպես կարելի է օգտագործել քաղաքական ագիտացիայի ամենատարածված ձևը՝ լրագիր ընթերցելը աշխույժ զրույց անցկացնելու համար և հասնել հարցերի ճիշտ ըմբռնմանը։ «Ինձ թվում է, որ ոչ ամեն դեպքում է հարմար և օգտակար մշտական ընթերցողների առաջադրումը։ Եթե ես գործարանի պարտիական կազմակերպության քարտուղարը լինեի, ապա այսպես կվարվեի, ճաշվա ընդմիջմանը կգայի բանվորների մոտ և կհարցնի. «Կա՞ն արդյոք լրագրերի ընթերցում լսել ցանկացողներ»։ Անշուշտ, այդպիսիներ կլինեին։ Այն ժամանակ ես կհարցնեի. «Իսկ ո՞վ է ցանկանում ընթերցել»։ Մեզ մոտ շատերը կարող են լրագիր կարդալ և ցանկացողներ անպայման կճարվեն։ Ես մի փորձված, կուլտուրական բանվոր կուղարկեի բանվորների այդ խմբակը, որպեսզի նա այնտեղ խոսակցություն բացեր և օգներ կարդացածն ըմբռնելու։ Դա թե ավելի բնական կլինի, և թե կնպաստի շրջա-

փելու բանվորներին հետաքրքրող հարցերը։ Իհարկե, պետք է ուղարկել կուլտուրական, տակտով մարդ։ Նրաշխավորում եմ, որ գրքույկի այդ մեթոդի դեպքում ընթերցումներն աշխույժ կանցնեն և հաջողություն կունենան» (էջ 14)։

Մ. Ի. Կալինինը ուսուցում էր, որ «... ագիտատորը պետք է գաղափարական մարդ լինի, խորապես նվիրված կոմունիստական պարտիային, պետք է գոնե ընդհանուր գծերով իմանա մեր պարտիայի պատմությունը ու հասկանա այն խնդիրները, որ մեր պարտիան դնում է բանվոր դասակարգի առաջ, ժողովրդի առաջ» (էջ 7)։ Նա պահանջում էր ագիտատորներից անդադրում զբաղվել ինքնազարգացմամբ, շատ կարդալ և բոլոր դեպքերում լուրջ կերպով նախապատրաստվել զրույցներին։ Ընդորում նա խիստ անհրաժեշտ էր համարում ագիտացիոն աշխատանքում գնահատել իրադրությունը, կշռադատել, թե ինչպիսի մարդկանց մեջ է գործում ագիտատորը, ունենալ շերտավորված մոտեցում։

Միխայիլ Իվանովիչ Կալինինը գտնում էր, որ այդ էլ դեռ բավական չէ հաջող ագիտացիայի համար։ Նա հատուկ նշանակություն էր տալիս նաև ագիտատորի լեզվին, պա-



հանջում էր, որպեսզի ագիտատորն իր մտքերը հաղորդի ցայտուն կերպով, ունկնդիրներից յուրաքանչյուրի համար պարզ և հասկանալի, իսկ դրան հասնելու համար աշխատել իր լեզվի վրա։

Մ. Ի. Կալինինը բացառիկ նշանակություն էր տալիս ագիտատորի անձնական օրինակին։ Որպեսզի ագիտատորի խոսքը իրական ազդեցություն ունենա մասսաների վրա, որպեսզի մասսաները լսեն նրա ասածները և հավատան նրան, ագիտատորը պետք է անձնական օրինակով ցույց տա հաջողության ուղին։ Նա պետք է բոլշևիկյան բոցաշունչ խոսքով և իր անձնական օրինակի աշխատանքով մարդկանց մեջ դաստիարակի սովետական հայրենասիրություն և ազնիվ վերաբերմունք դեպի աշխատանքը։

Բոլշևիկյան ագիտացիայի հարցերի մասին նրա ընտիր ելույթների ներկա ժողովածուն պետք է դառնա ամեն մի ագիտատորի սեղանի գիրքը, որը հսկայական չափով կընպաստի մասսաների մեջ տարվող քաղաքական ագիտացիայի որակի բարձրացմանը։

Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔ Ի ՊԱՏԻՎ ՀԱՄԼԿԵՄ 30-ԱՄՅԱԿԻ

Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միությունը այս տարվա հոկտեմբերի 29-ին տոնում է իր 30-ամյակը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԼԿԵՄ 30-ամյակը անցկացնելու վերաբերյալ իր որոշման մեջ ընդգծել է, որ 30-ամյակի նախապատրաստումը և տոնակատարությունը պետք է անցկացնել բոլշևիկյան պարտիայի շուրջը սովետական երիտասարդությանն էլ ավելի համախմբելու, հետպատերազմյան հրնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար կոմերիտականներին ու երիտասարդությանը մոբիլիզացնելու, առաջավոր գիտությանը, տեխնիկային տիրապետելու նշանաբանի տակ, կոմերիտական կազմակերպությունների կազմակերպական-քաղաքական հետագա ամրապնդման և երիտասարդությանը սովետական հայրենասիրու-



թյան ոգով դաստիարակելու ուղղությամբ նրանց աշխատանքների բարելավման նշանաբանի տակ։

Սովետական ժողովուրդը ունի սքանչելի մարտական տրադիցիա։ Նա միշտ իր տոները, պանծալի հոբելյանները նշում է հերոսական աշխատանքով, աշխատանքային նորանոր սխրագործություններով։ Այդ տրադիցիային հավատարիմ է նաև կոմերիտմիությունը, մեր սքանչելի երիտասարդությունը։ Ամբողջ երկրում, մեր հայրենիքի բոլոր անկյուններում, քաղաքում, թե գյուղում մեր ողջ երիտասարդությունը ապրում է մեկ ձգտումով՝ արժանավայել դիմավորել ՀամԼԿԵՄ 30-ամյակը։

Հայրենիքի համար տոնական մեծ նվերներ են պատրաստում արդյունաբերության մեջ աշխատող կոմերիտականները, ողջ երիտասարդությունը։ Ֆաբրիկաներում, գործարաններում, հանքահորերում, արտադրական բոլոր ձեռնարկություններում ծավալվել է լայն սոցիալիստական մրցություն ի պատիվ պանծալի հոբելյանի, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Կիևի կոմերիտականները պարտավորվել են հոկտեմբերի

29-ին կատարել տարեկան պլանը և պլանից դուրս երկրին տալ 20 միլիոնի արտադրանք, տնտեսել 15 միլիոն ռուբլու հումք, վառելանյութ և էլեկտրաէներգիա։ Այդ պարտավորությունները Սովետական Ուկրաինայի մայրաքաղաքի կոմերիտականները. պատվով են կատարում։

Մեծ պարտավորություն են ստանձնել նաև Լենինգրադի Կիրովի անվան գործարանի կոմերիտականները։ Նրանք խոստացել են պլանից դուրս երկրին տալ կոմերիտմիության անունը կրող տրակտորային շարասյուն։ Այդ գործարանի 1500 երիտասարդ բանվորներ ի պատիվ ՀամԼԿԵՄ 30-ամյակի, արդեն կատարել են իրենց տարեկան պլանը։ Կրիվոյ Ռոգի երիտասարդները պլանից դուրս երկրին տվել են 80 հազար տոննա հանքաքար։ Պանծալի տոնը մեծ նվերներով են դիմավորում նաև Իվանովոյի տեքստիլ կոմբինատի երիտասարդ ջուլհակները։ Նրանք մինչև հոկտեմբերի 29-ը Հայրենիքին տալու են հարյուր հազարավոր մետր չթեղեն։ Ահա կոմբինատի կոմերիտական կազմակերպության ժողովի արձանագրության քաղվածքը— Բոլոր կոմերիտականներին և երիտասարդ բանվորներին՝ հոկտեմբերի 29-ին կատարել տարեկան առա-



ջադրանքները և մինչև տարվա վերջը պլանից դուրս արտադրել 300 հազար տոննա մանվածք, 900 հազար մետր կոպիտ գործվածք և 700 հազար մետր չթեղեն։ Մինչև հոբելյանի օրը, լրացուցիչ տնտեսել 1 միլիոն 500 հազար ռուբլի։ Առաջին տեսակի ապրանքների արտադրանքի քանակը հասցնել մինչև 85 տոկոսի։

Սովետական ամբողջ երիտասարդության հետ միասին, արտադրական նոր հաջողություններով է դիմավորում փառապանծ հոբելյանը նաև Սովետական Հայաստանի երիտասարդությունը։ Կոմերիտականներն ու երիտասարդ բանվորները կանգնել են ստախանովյան հերթափոխի՝ ի պատիվ ՀամԼԿԵՄ 30-ամյակի։ Նրանք ստանձնում են նոր, բարձր պարտավորություններ։

Իրենց տոնը արժանավայել դիմավորելու են պատրաստվում Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի երիտասարդ հայրենասեր բանվորները։ Դեռ 5 ամիս առաջ, փականագործ Սուրեն Առաքելյանը, որն արդեն աշխատում է ի հաշիվ 1952 թվականի պլանների, կոմերիտական ժողովում նոր արշավ հայտարարեց ի պատիվ ՀամԼԿԵՄ 30 ամյակի։ Արշավի մեջ ընդգրկվեցին բոլոր երիտասարդները, որոնք պարտավորվեցին մին-

չև հոկտեմբերի 29-ը կատարել իրենց տարեկան պլանը։ Առանց հապաղելու, նրանք գործի անցան։ Աշխատանքը դարձավ ավելի լարված, ավելի կրքոտ։ Համառ աշխատանքը տվեց իր արդյունքները։ 17 երիտասարդներ արդեն կատարել են իրենց հնգամյա պլանը, իսկ ավելի քան 80 հոգի աշխատում են 1949 թվականի պլանների հաշվին։ Մոտ 150 երիտասարդներ իրենց օրվա պլանը կատարում են 150 և ավելի տոկոսով։ Ընկ. Ս. Առաքելյանի նախաձեռնությամբ կազմակերպվեց ՀամԼԿԵՄ 30-ամյակի անվան նոր բրիգադա։ Բրիգադայի անդամները կանգնելով ստախանովյան հերթափոխի, պարտավորվել են մինչև հոկտեմբերի 29-ը կատարել եռամսյա պլանը։

Լենինականի Գորգագործական արտելի երիտասարդ բանվորները պարտավորվել են մինչև հոկտեմբերի 29-ը ոչ միայն կատարել տարեկան պլանը, այլև այն գերակատարել 30 տոկոսով։ Աշխատանքային նոր սխրագործություններով են նշանավորում նախատոնական օրերը նաև Զանգեզուրի հանքափորները։ Նրանք ծավալել են սոցիալիստական լայն մրցություն բոլոր հանքախորշերում ու աշխատանքային տեղամասերում։ Երիտասարդ հանքագործները օրական կա-



տարում են երկու, երկու ու կես նորմա։ Երևանի Մուլտի գործարանի երիտասարդ բանվորները որոշել են հոկտեմբերի 29-ին պլանից դուրս երկրին տալ 1300 քառակուսի մետր ապակի։

Աշխատանքային մեծ խանդավառություն է ապրում մեր երկրի ողջ երիտասարդությունը. Նրանց ստեղծագործական երիտասարդական աշխատանքը, երիտասարդական եռանդը Հայրենիքին է նվիրում հազարավոր տոննաներ պողպատ, չուգուն, քարածուխ, նավթ, պղինձ, քիմիական պարարտանյութ, շինանյութեր, մեծ քանակությամբ դազգահներ, գյուղատնտեսական մեքենաներ, հարյուր հազարավոր մետր կտորեղեն։

Բարձրացնել արտադրողականության տեմպերը, անընդհատ լավացնել արտադրանքի որակը, պայքարել արտապլանային կուտակումների համար, խնայողաբար ծախսել հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան, տիրապետել առաջավոր տեխնիկային, ռացիոնալ օգտագործել աշխատաժամը, աշխատանքը դարձնել շահութաբեր— այսպիսի նշանաբանով են երիտասարդ արտադրողները դիմավորում Համամիութենական Լենինյան Կոմերիտմիության պանծալի 30-րդ տարեդարձը։

Գ. ՄԻՆԱԵՎ

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵՋ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### I.

### ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 31-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՒ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

*1. Արտադրության տեմպերի բարձրացումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և աշխատանքի արտադրողականության նոր, հզոր վերելքը— արտապլանային սոցիալիստական կուտակումների ստացման հիմքն է արդյունաբերության մեջ, ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու գրավականը։*

*2. Ստախանովականների կուլտուրական ու տեխնիկական մակարդակի հետագա*



*բարձրացումը, յուրաքանչյուր բանվորի ու բանվորուհու կողմից նորմայի կատարման ու գերակատարման համար մղվող պայքարը— արտադրության բարձրացման պայմաններից մեկն է։*

*3. Ռեսպուբլիկայի հացամթերումների պլանի ժամկետից շուտ կատարումը և տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը ժամկետից շուտ կատարելու համար ստանձնած պարտավորությունները— Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների հայրենասիրության նոր արտահայտությունն է։*

*4. Կարճ ժամկետում գյուղատնտեսական աշխատանքների օրինակելի ավարտումը— Ռեսպուբլիկայի կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների պատվի գործն է։*

Գրականություն ագիտատորների համար

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինին *(մայրաքաղաքի 35 ձեռնարկությունների ղեկավարների նամակը)։ «Սովետական Հայաստան», 31 օգոստոսի 1948 թ.*

Հայրենասիրական հոգատարություն Հայրենիքի բարօրության նկատմամբ, սովետական պետության շահերի նկատմամբ

*(«Պրավդայի» սեպտեմբերի 15-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 17 սեպտեմբերի 1948 թ.։*

Մոսկվայի արդյունաբերության աշխատողների խորհրդակցությունը։ *«Սովետական Հայաստան», 17 սեպտեմբերի 1948 թ.։*

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։ *Հայկական Ռեսպուբլիկայի ռապորտը՝ հացամթերումների պետական պլանը ժամկետից շուտ կատարելու մասին։ «Սովետական Հայաստան», 9 սեպտեմբերի 1948 թ.։*

Հայկական ՍՍՌ բոլոր ՄՏ կայանների տրակտորիստներին, կոմբայնավարներին, մեխանիկներին և արհեստանոցների աշխատողներին *(Ախուրյանի ՄՏ կայանի տրակտորիստների և կոմբայնավարների դիմումը)։ «Սովետական Հայաստան», 29 սեպտեմբերի 1948 թ.։*

Ավելի լայն ճանապարհ գյուտարարներին և ռացիոնալիզատորներին։ *«Սովետական Հայաստանի» սեպտեմբերի 24-ի առաջնորդողը։*

Համաժողովրդական մրցության կազմակերպիչ ուժը *(«Պրավդայի» սեպտեմբերի*



*24-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 25 սեպտեմբերի 1948 թ.։*

Երևան քաղաքի արդյունաբերության բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների դիմումը *(արտապլանային սոցիալիստական կուտակում ընտանելու մասին)։ «Սովետական Հայաստան», 6 հոկտեմբերի 1948 թ.։*

Աշխատել առանց դոտացիայի, բարձրացնել ձեռնարկությունների շահավետությունը։ *«Սովետական Հայաստանի» հոկտեմբերի 10-ի առաջնորդողը։*

## II.

## ՀԱՌԱՋԱՏ ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՐՏԱՊԼԱՆԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՏԱԿՈՒՄՆԵՐ

*1. Մոսկվայի արդյունաբերության աշխատողների հայրենասիրական նախաձեռնությունը — տալ 2 միլիարդ ռուբլի արտապլանային կուտակում և Երևան քաղաքի արդյունաբերության աշխատողների արձագանքը այդ կոչին — սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցության վառ արտահայտությունն է։*

*2. Նոր տեխնիկայի արմատավորումը և արտադրության կազմակերպման հետագա*

կատարելագործումը— աշխատանքի արտադրողականության արագ աճման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գրավականն է։

3. Արտադրության նորարարների փորձի և աշխատանքի առաջավոր մեթոդի լայն տարածումը— արտապլանային կուտակումներ ստանալու համար մղվող հաջող պայքարի կարևոր պայմանն է։

4. Պահպանել սարքավորումն ու գործիքները, տնտեսել հումքը, նյութերը, վառելանյութն ու էլեկտրաէներգիան— սովետական ամեն մի բանվորի պարտքն է։

5. Ինչպես է մեր ձեռնարկությունում ծավալվում պայքարը արտապլանային կուտակումների համար։

## Գրականություն ագիտատորների համար

ՕՐԵՆՔ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ., էջ 3—16։*

ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինին *(մայրաքաղաքի 35 ձեռնարկությունների ղեկավարների նամակը)։ «Սովետական Հայաստան», 31 օգոստոսի 1948 թ.։*



Հայրենասիրական նախաձեռնություն Հայրենիքի բարօրության նկատմամբ, սովետական պետության շահերի նկատմամբ *(«Պրավդայի» սեպտեմբերի 15-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 17 սեպտեմբերի 1948 թ.։*

Մոսկվայի արդյունաբերության աշխատողների խորհրդակցությունը։ *«Սովետական Հայաստան», 17 սեպտեմբերի 1948 թ.։*

Համաժողովրդական մրցության կազմակերպիչ ուժը *(«Պրավդայի» սեպտեմբերի 24-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 25 սեպտեմբերի 1948 թ.։*

Երևան քաղաքի արդյունաբերության բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների դիմումը *(արտապլանային սոցիալիստական կուտակումներ ստանալու մասին)։ «Սովետական Հայաստան», 6 նոյեմբերի 1948 թ.։*

Աշխատել առանց դոտացիայի, բարձրացնել ձեռնարկությունների շահավետությունը։ *«Սովետական Հայաստանի» նոյեմբերի 10-ի առաջնորդողը։*

Պայքար խնայողության համար— ագիտատորի պատվավոր խնդիրն է։ *«Ագիտատորի բլոկնոտ», 1948 թ., № 18, էջ 25—33։*

## III.

## ԼԱՅՆ ԿԵՐՊՈՎ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ՝ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ՀԱՋՈՂ ԱՎԱՐՏԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Մեծ Հոկտեմբերի 31-րդ տարեդարձը նշանավորել գյուղատնտեսական աշխատանքների օրինակելի ավարտումով։*

*2. Ցրտահերկի ժամանակին և բարձրորակ կատարումը — 1949 թվականի բարձր բերքի հուսալի հիմքն է։*

*3. Պետության արտապլանային կարգով գյուղատնտեսական մթերքներ տալու համար ստանձնած լրացուցիչ սոցիալիստական պարտավորությունների ժամկետից շուտ կատարումը — Ռեսպուբլիկայի յուրաքանչյուր կոլխոզնիկի և կոլխոզնիկուհու պատվի գործն է։*

*4. Գյուղատնտեսական բոլոր աշխատանքների կատարումը ամենասեղմ ժամկետում, — Ռեսպուբլիկայի կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների և գյուղատնտեսության բոլոր աշխատողների պատվի գործն է։*

*5. Ինչպես է, մեր կոլխոզում (ՄՏ կայանում, սովխոզում) ծավալվում սոցիալիստական մրցությունը գյուղատնտեսական բոլոր*



*աշխատանքները սեղմ ժամկետում ավարտելու համար։*

Գրականություն ագիտատորների համար

Հայկական ՍՍՌ բոլոր ՄՏ կայանների տրակտորիստներին, կոմբայնավարներին, մեխանիկներին և արհեստանոցների աշխատողներին *(Ախուրյանի ՄՏ կայանի տրակտորիստների և կոմբայնավարների դիմումը)։ «Սովետական Հայաստան», 29 սեպտեմբերի 1948 թ.։*

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի նախագահ ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին: *Հայկական Ռեսպուբլիկայի ռապորտը՝ հացամթերումների պետական պլանը ժամկետից շուտ կատարելու մասին։ «Սովետական Հայաստան», 9 սեպտեմբերի 1948 թ.։*

Բոլշևիկյան թափով առաջ տանենք տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը: *«Սովետական Հայաստանի» սեպտեմբերի 26-ի առաջնորդողը։*

Ցրտահերկի վճռական օրերը: *«Սովետական Հայաստանի» հոկտեմբերի 6-ի առաջնորդողը։*

## IV.

## ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՕԳՆԱԿԱՆՆ Է

### (ՀամԼԿԵՄ 30-ամյակի առթիվ)

*1. Լենինը և Ստալինը կոմերիտմիության, բոլշևիկյան պարտիայի հուսալի օգնականի և մարտական ռեզերվի դերի ու խնդրի մասին։*

*2. Քաղաքացիական և Հայրենական Մեծ պատերազմների տարիներին կոմերիտմիության և երիտասարդության ցուցաբերած հերոսությունը Լենինի-Ստալինի պարտիային նրա անսահման նվիրվածության արտահայտությունն է։*

*3. Կոմերիտմիությունը ՀամԿ(բ) Պարտիայի ակտիվ օգնականն է՝ երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի, գյուղատնտեսության կոլեկտիվացման, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի համար մղած պայքարում։*

*4. Կոմերիտմիությանը Կարմիր Դրոշի շքանշանով, Աշխատանքային Կարմիր Դրոշով և Լենինի շքանշանով պարգևատրելը՝ Հայրենիքի հանդեպ կոմերիտմիության ու երիտասարդության մատուցած ծառայությունների վկայագիրն է։*



*5. Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությունը— կոմերիտմիության ուժի և ամրության աղբյուրն է, նրա պայքարի գրավականը ստալինյան նոր հնգամյակը ժամկետից շուտ կատարելու գործում։*

Գրականություն ագիտատորների համար

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երիտասարդության միությունների խնդիրները: *Լենին և Ստալին. Երիտասարդության մասին։ Պետհրատ, 1939 թ., էջ 253—274։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ՀամԼԿԵՄ Համամիութենական 8-րդ համագումարում: *Ի. Վ. Ստալինը երիտասարդության մասին։ Քաղհրատ, 1941 թ., էջ 52—63։*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ. Կոմսոմոլի փառապանծ ուղին: *Մ. Ի. Կալինին, Երիտասարդության մասին։ Քաղհրատ, 1942 թ., էջ 148—245։*

Լենինի-Ստալինի պարտիան կոմերիտմիության կազմակերպիչն է ու ղեկավարը: *«Ավանգարդ», 15, 18 սեպտեմբերի 1948 թ.։*

Լենինի և Ստալինի պայքարը պրոլետարական երիտասարդության ինքնուրույն շարժման համար: *«Ավանգարդ», 29 սեպտեմբերի, 6 հոկտեմբերի 1948 թ.։*

Ն. Ա. ՄԻԽԱՅԼՈՎ.— Դեպի ՀամԼԿԵՄ 30-

ամյակը։ «Ավանգարդ», 2 հոկտեմբերի 1948 թ.։

## V.

## ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՖՐԱՆՍԻԱՅՈՒՄ

1. Ֆրանսիայի տնտեսական ու քաղաքական դրության վատթարացումը։
2. Ռեակցիայի ուժերի համախմբումը և սոցիալիստների հակաժողովրդական քաղաքականությունը։
3. Ֆրանսիական պրոլետարիատի անհաշտ պայքարը իր իրավունքների, ազատության և անկախության համար։
4. Կառավարական ճգնաժամերը որպես արտացոլում դասակարգային սուր պայքարի երկրի ներսում։
5. Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի ավանգարդային դերը երկրի դեմոկրատական ուժերի համախմբման գործում և նրանց պայքարը ընդդեմ ռեակցիայի, ազգային անկախության և երկրի դեմոկրատացման համար։

Գրականություն ագիտատորների համար

Ֆրանսիայի աշխատավորները պահանջում են ստեղծել դեմոկրատական միասնության կառավարություն։ «Սովետական Հայաստան», 1 սեպտեմբերի 1948 թ.։



Ֆրանսիայի ազգային ժողովում։ «Սովետական Հայաստան», 14 սեպտեմբերի 1948 թ.։

Վ. ԴՐԻՇԱՆԻՆ.—Միջազգային տեսություն։ Կառավարական նոր ճգնաժամը Ֆրանսիայում։ «Սովետական Հայաստան», 5 սեպտեմբերի 1943 թ.։

Դրությունը Ֆրանսիայում։ «Սովետական Հայաստան», 21 սեպտեմբերի 1948 թ.։

Ֆրանսիական կոմպարտիայի կոչը։ «Սովետական Հայաստան», 24 սեպտեմբերի 1948 թ.։

Թորեզի և Դյուկլոյի ելույթները։ «Սովետական Հայաստան», 14 հոկտեմբերի 1948 թ.։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 04584 Պատվեր № 707 Տիրաժ 9.200
Ստորագրված է տպագրության 14/X 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора

